1917 № 14—Ապրիլ 16

ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ

Լոյս է տեսնում կիրակի օրերը

10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման, տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արասաբադեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амба[illegible]ръ". Tiflis, Rédaction du journal „Hambavaber".



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

Ռուսաստանի Մեծ Յեղափոխութեան ազատարար հողմը կենդանութիւն ներշնչեց հասարակական և քաղաքական շրջաններում.

Այդ կենդանարար հողմը ազդեցութիւն ունեցաւ և հալածուած ազգայնութեան գաղափարի վրայ.

Ցարականութեան ահաբեկումը չէզոքացրել և համրութեան էր հասցրել ազգայնութիւնը. Ամենամեծ և անողորմ սարսափները միշտ ուղղուած են եղել ազգութիւնների դէմ.

Հին ռեժիմի երկրպագու և անիմաստ քաղաքագէտները ձգտում էին բռնակալական կոպիտ միջոցներով ոչնչացնել, խլպառ մեռցնել ազգութիւնների մէջ ազգային ոգին, ազգային գաղափարը. Նրանք մոռանում էին, որ ազգային գաղափարը չի կարող մեռնել, քանի որ կենդանի է, քանի որ ապրում է ինքը ազգը. Նրանք անտես էին առնում, որ գաղափարը միշտ յաղթում է, իսկ նրա հալածողը վերջ ի վերջոյ խորտակւում.

Եւ մենք այժմ ականատես ենք այդ բնական և անսասան օրէնքի կատարման.

Երբ յեղափոխութիւնը փշրեց ու ոչնչացրեց հին կարգերը. երբ մեծ ու լայնածաւալ Ռուսաստանի հորիզոնի վրայ բացուեց ազատութեան արշալոյսը, արթնեցին խեղդող մթնոլորտից և խօսեցին բազմալեզու ազգութիւնները.

Ամեն մէկը նրանցից խոնարհելով իւր գլուխը ազատ, ռամկավար Ռուսաստանի անբաժան անբողջութեան առաջ և համարելով իրեն նրա մի մասնիկը, բացարձակ յայտարարեց իւր ինքնորոշման պահանջն ու իրաւունքը, և պարզ կերպով յայտնեց, որ նա ցանկանում է և իրաւունք ունի ապրելու իւր պատմական վայրում, իւր հայրենի հողի վրայ, իւր ազգայնական առանձնայատկութիւններով, ներքին ինքնավար կեանքով:

Նոր յեղափոխական կառավարութիւնն այդ տեսակ պահանջներ գտնում է բնական և իրաւացի, որովհետև նա խորապէս գիտակցում է, որ Ռուսաստանի գոյութիւնը և նրա զարգացումն ապահովելու համար հարկաւոր են ոչ թէ սուիններ, ինչպէս կարծում էին հին ռեժիմի պաշտպանները, այլ լայն ժողովրդապետական կազմ՝ ֆեդերատիւ (դաշնակցական) հանրապետութիւն ռամկավարական սկզբունքների վրայ հիմնուած. Իսկ այդ տեսակ քաղաքական կազմի մէջ ազգային ինքնորո-

շումը համարւում է միանգամայն հնարաւոր և իրագործելի։

Այս և համանման կարդինալ հարցերի լուծման համար մօտ ապագայում կազմուելու է սահմանադիր ժողով։

Եւ քաղաքական կուսակցութիւններ, և զանազան ազգութիւններ եռանդուն կերպով պատրաստում են ծրագրեր Սահմանադիր Ժողովի սեղանի վրայ դնելու։

Հայ ազգը ևս գտնւում է այդ պատմական մեծ օրերի նախօրեակին, նա ևս պարտաւոր է պարզել իւր իղձերն ու պահանջները։

Նախապատրաստական աշխատանքների համար միակ միջոցն է համախորհրդակցութիւններ ու համագումարներ կազմել լայն ժողովրդական ընտրութեան եղանակով, որպէս զի համախորհրդակցութեան կամ համագումարի որոշումները, եզրակացութիւնները համարուեն ոչ թէ խմբակցական կամ կուսակցական, այլ համազգային։

Համագումար հրաւիրելու միտքը վաղուց զբաղեցնում էր հայկական զանազան շրջանների, բայց արտաքին պայմանները և երբեմն զանազան փափկանկատումներ խանգարում էին այդ մտքի իրագործումը։

Հանդէս եկաւ ազատութիւն և խոչընդոտներն անհետացան։

Այլ ևս չկայ արգելառիթներ ժողովուելու և ազատ կերպով մտքեր արտայայտելու համար։

Այս ամսի 12-ին կայացաւ մի մեծ խորհրդակցական ժողով Թիֆլիսում. ժողովում մասնակցում էին կուսակցութիւնների, Ազգային Բիւրոյի ներկայացուցիչներ և գլխաւոր գաւառական քաղաքներից եկած պատգամաւորներ։

Ժողովը որոշեց մինչեւ առաջիկայ մայիսի վերջը քառանդամ ձայնատուութեան եղանակով ընտրուած ժողովրդական ներկայացուցիչներից հրաւիրել համագումար։ Այս համագումարը, իբր անդրանիկ հայկական համագումար, պէտք է հրաւիրուի հայկական կենտրոնում՝ Երևանում։

Համագումարին է թողնուած որոշելու իւր օրակարգը և զբաղմունքների առարկաները։

Այս համագումարը պէտք է համարել մի մեծ հասարակական երևոյթ մեր կեանքի մէջ։ Երկարատև կաշկանդումներից յետոյ այս ժողովը կը լինի առաջինը, երբ ժողովրդի իսկական կամքը կարող կը լինի արտայայտուել, ինչպէս և նրա տեսակէտները մեզ զբաղեցնող բազմաթիւ հասարակական և ազգային հարցերի մասին։

Համագումարը, իբր հեղինակաւոր ազգային ժողով, իւր զբաղմունքների մէջ առաջին տեղը կը դնի այն հարցը, որ մենք, հայերս, ինչպէս և միւս ազգերը, պէտք է ազգովին և գործնականապէս աջակցենք նոր կառավարութեան, որպէս զի նուաճուած ազատութիւններ ամրապնդեն. դրանից է կախուած մեր ամբողջ ապագան, մեր փրկութիւնը։ Ոչ պակաս լրջմտութեամբ պէտք է քննել, թէ ինչ ուժեղ միջոցներով հաստատել անքակտելի կապեր և համերաշխութիւն մեր հարևան թուրք և վրացի ազգերի հետ․ առանց այդ տեսակ կապերի Կովկասում ժողովուրդների կեանքը միշտ կը մնայ թունաւորուած։

Համագումարի ուշադրութիւնն առաւել ևս կը զբաղեցնի Կովկասի ապագայ քաղաքական կազմը ու մեր ներքին կեանքի խոշորագոյն այլ խնդիրները։ Վերջապէս, համագումարը չի կարող անտես առնել և հայութեան սիրտը մաշող՝ հայ գաղթականութեան և Տաճկաստանի վիճակի հարցերը։

Ահա թէ ինչ ծանրակշիռ հարցեր են լինելու դրուած համագումարի առաջ։

Այդ հարցերը պէտք է քննուեն և պէտք է որոշ լուծումն ստանան։

Այդ է պահանջում հայի ալեկոծուող սիրտն ու միտքը։

Համագումարը պէտք է ընտրի և կենտրոնական մարմին՝ ազգային խորհուրդ անունով, որը և պէտք է ղեկավարի ազգային գործերը համագումարի կողմից տուած ուղղեցոյցներով։

Պարզ է, որ մենք, հայերս շատ լայն շրջահայեացքով պէտք է վերաբերուենք առաջիկայ համագումարին և լուրջ պատրաստուենք, որպէս զի զբաղմունքները արդիւնաւոր լինեն։

Աւելի քիչ խօսքեր և աւելի շատ մտքեր ու գործեր։ Համագումարի յաջող ելքը կը բարձրացնի ժողովրդի տրամադրութիւնը, կոգևորի նրան, իսկ անյաջողութիւնը առաջ կը բերի հիասթափումն իւր կորստաբեր և վնասակար հետևանքներով։

Այս համագումարը լինելու է առաջին դասը մեր քաղաքական հասունութեան։

Թող հայը ևս ցոյց տայ, որ քաղաքական տեսակէտից հասունացած է, որ ինքն էլ իրաւունք ունի և արժանի է ինքնավար քաղաքական կեանք վարելու։

Ս. Յարութիւնեանց

---

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

— Ապրիլի առաջի կիսի ընթացքում պատերազմական կարևոր գործողութիւններ կատարուեցան ֆրանս-անգլիական ճակատում։

— Ֆրանսացիները շարունակում են անընդհատ առաջանալ Ժիվանկուրից հարաւ և Կուրսիից արևելք։ Ուազի, Սէն-Կանտէնի, Շամպայնի և Ժիվենկուրի շրջաններում ֆրանսացիք ուժեղ գրոհով վնասել են գերմանական բազմաթիւ ամրացրած դիրքերը։

— Նոյնքան կատաղի գրոհներով քայլ առ քայլ առաջանում է անգլիացոց զօրքը՝ արևմտեան ճակատի վրայ։ Ապրիլի 12-ին արիւնալի կռուից յետոյ անգլիացիները գրաւեցին Վելլար, Պլուեշ և Բոկան։ Նրանք յամառ կերպով առաջ են ընթանում Սէն-Կանտէնի ջրանցքի ուղղութեամբ։

— Մարտի 27-ից մինչև ապրիլի 7-ը անգլո-ֆրանսացիների

տարած գերմանացի գերիների թիւը հասնում է 33,000-ի, խլուած է 330 թնդանօթ։

— Միւս ճակատամասերում հրաձգութիւններ և հետախոյզների ընդհարումներ են տեղի ունենում։

---

## ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏՕՆԸ

*Մարդն յարեաւ ի մեռելոց...*

*Նորից Յարութեան, կեանքի տօն է, մի «յարութիւն», որպիսին մարդկութիւնը թերևս մինչև այսօր չէ տեսել։*

*Յարութեան տօն է, կեանքի և Վերածնութեան տօն՝ մահուան ու թաղումի այս սև ու սուգ օրերին։*

*Մեռնելով կեանքի համար՝ մարդս յաղթում է մահին, նորից յարութիւն առնում, վերածնւում մեռելներից։*

*Երբէք դարերից ի վեր այնքա՜ն ահաւոր, ա՜յնքան տիրաբար չէ իշխել մահը. երբէք էլ կեանքը այնքա՜ն տիրաբար չէ յաղթել մահին։*

*Երբէք մեր կեանքը այնքա՜ն ողբերգական և մարդս այնքա՜ն գազան չէ եղել։ Երբէք էլ սակայն մարդս այդ ամենից չէ տանջուել այսչա՜փ։*

*Երբէք մարդկային մշակոյթը այսքան հակասական, այսքան ցաւագար չէ եղել։ Երբէք դա ինքն իւր հետ այսքան երկպառակ, այսքան թշնամի չէ եղել։*

*Մարդակեր բարբարոսութիւնն ու մարդասպաշտ մշակոյթը ապրում էին կողքի-կողքի մի չնաշխարհիկ, մի անմեկին, ողբագին համերաշխութեամբ։*

*Մարդկային մշակոյթը իւր անողոք, իրարարամերժ հակասութիւններով ու հակաօրինութիւններով (անտինոմիա) ի դերև էր հանում մարդկութեան ոսկէ երազները։*

*Մարդ-գազանն էր շղթայզերծ եղել մոլեգնօրէն իւր արիւնռուշտ ու մարդակեր ախորժակներով և կարմիր խենթութեամբ սոսկում ցանում աշխարհում։*

*Աստուածամարդը, «մարդը մարդու համար աստուած» գեղեցիկ սկզբունքով ապրող մարդն էր, որ յօշոտում ու ծուատում էր «մարդը մարդու համար գայլ» գոչելով։*

*Խաղաղութիւն, սէր ու եղբայրութիւն էին տենչում ու երազում, բայց պատերազմ, ատելութիւն և թշնամութիւն ստեղծում աշխարհում։*

*Ահա՛ թէ որպիսի ներքին հակասութիւններից ու արտաքին հակադրութիւններից հանեց մեզ այս «յարութեան տօնը», Ռուսական Յեղափոխութիւնը։*

*Որքան վեհ, աստուածային բան կայ այդ Յեղափոխութեան մէջ։ Այդ իսկապէս Յարութիւն—Խաղաղութեան և սիրոյ տօն էր։*

*Այդ իսկապէս յարութիւն տուեց մեռելներին և «մահուամբ զմահ կոխեաց»։ Համասփիւռ մահուան ու ստրկութեան պահին կենդանութիւն տուեց շատերին և պատերազմի—մահուան ժամին պատիժը վերացրեց։*

*Նա խորտակեց ու վայր գլորեց մարդկային մտքի ու կամքի արգելքները, ստրկութեան ու մահուան իրաւական արդարացումները։ Բարոյականութիւնը յաղթեց օրէնքին։*

*Պատմութեան մէջ աւելի խիզախ, աւելի վճռական գործեր չեն գործուել՝ այսքան վճռական, այսքան տարաժամ, «աննպաստ» ժամին։*

*Երբէք հին տախտակները այսքան վստահօրէն, այսքան թեթև ու հանգիստ սրտով չեն խորտակուել՝ որպէս այժմ։*

*Երբէք հնից նորի անցնումը, երբէք նորի երկունքը այսքան անցաւ, այսքան հաճելի չէ եղել՝ որպէս այսօր։*

*Երբէք Արդարութիւնն ու Բարոյականութիւնը այսքան արդար, այսքան բարոյական եղանակով չեն յաղթանակել։*

*Կային օրեր, շաբաթներ, երբ ոչ մի «գրուած օրէնք» չէր կաշկանդում մարդկանց, չէր իշխում Ռուսաստանում, երբ բարոյական օրէնքը և փոխադարձ ազատութեան սկզբունքն էր ղեկավարում լայնածաւալ պետութեան միլիոնաւոր մարդկանց։*

*Կռուելով արտաքին և ներքին թշնամիների դէմ, կռուելով ամենուրեք մահ սփռող դահիճների դէմ մի տարականոն, մի եզակի արարքով, Ռուսական Յեղափոխութիւնը ոչնչացրեց մահուան պատիժը։*

*Մի անօրինակ, աննախընթաց բարոյականութեամբ նա իւր թշնամուն հաստատապէս յաղթելու համար... դէն ձգեց իւր արտաքին զէնք—մահն ու ահաբեկումը և զօտեպնդուեց Արդարութեամբ ու Ազատութեամբ։*

*Որպէս Յիսուս Գեթսեմանի պարտէզում՝ Ռուս Յեղափոխութիւնը «պաշտպանուել» չկամեցաւ։ Սրերը պատեանում—գոչեց Արդարութիւնը ի դէմս Կերենսկու ի տես «Յուդաների ու դահճապետների։*

*— Արդարութիւնը պէտք է դատէ սրան։ Որպէսզի արդարութիւնը կատարելապէս յաղթանակէ հէնց առաջին օրից, հէնց ամենից անարդարադատի նկատմամբ՝—պատրաստ եմ իմ կեանքով պաշտպանել նրան, ասաց Կերենսկին զօրքի ու բանուորների Լինչի դատաստանից փրկելով Սուխոմլինովներին։*

*Ո՛չ մի անարդարութիւն արդարութեան մէջ։—Ահա՛ Արդարութիւնը ինքը։*

*Ո՛չ մի մահ մահը վերացնելու համար։—Ահա՛ Բարոյականութիւնը։*

*Ոչ մի ստրկութիւն—յանուն Ազատութեան։ Ոչ ազգային, ոչ կրօնական, ոչ դասային։ Ոչ էլ կանանց—մարդկութեան գեղեցիկ կէսի ստրկութիւն։*

*Ահա Ռուսական Յեղափոխութեան բարոյական ոյժը։*

*Եւ եթէ նկատի ունենանք և դրա համաեւրոպական նշանակութիւնը և այն, որ դա այսօր պատերազմում է պատերազմի դէմ, պատերազմում է—պատմութեան մի ողբերգական հակասութեամբ—յանուն խաղաղութեան ու ժողովուրդների եղբայրութեան՝ ապա պարզ կը լինի դրա ոչ միայն պատմական-քաղաքական, այլ կուլտուր-բարոյական նշանակութիւնը։*

*Երբէք մարդկութիւնը, նոյն իսկ Ֆրանս. Մեծ Յեղափոխութեան մէջ, արդարութեան ու ազատութեան նման յաղթութիւն չէ տեսել։*

*Ուստի և հաւատում ենք, որ այս Յարութեան ու Վերածնութեան տօնը մարդկութեան Ազատութեան, Խաղաղութեան ու Եղբայրութեան տօն կը դառնայ։*

Վ. Խորենի

---

## ԳԻՒՂԱԿԱՆ ՏԱՐՐԻ ԴԵՐԸ *)

III

Ֆրանսական մեծ ազգը, որը ահագին ճիգեր է թափում իւր գոյութիւնը պահպանելու, ենթակայ է աստիճանաբար ոչընչացման, շնորհիւ մի ուրիշ յանցաւոր ախտի՝ չծանրաբեռնուել երեխաներով։ Ֆրանսայի գիտնականները, քաղաքագէտները և ուրիշներ այդ հարցի մասին գրում են անդադար, առաջարկելով զանազան միջոցներ, բայց մինչև այժմ այդ բոլորը մնում է անհետևանք։

Ներկայ պատերազմի ընթացքում, թէ Գերմանիան և թէ Ֆրանսիան առաւելապէս զբաղւում են այդ հարցով, ի նկատի

*) Տես «Համբաւաբեր» № 13։

ունենալով անազին մարդկային կորուստները։ Ներկայ տարուայ ֆրանսական յայտնի հանդէսում ուշադրութեան արժանի է ազգաբնակութեան ստուգաբանութեան առաջման վերաբերեալ յայտնածը։

Ֆրանսան XVII դարում ունեցել է մեծ ազգաբնակութիւն, որ Եւրոպայի ազգաբնակութեան համարեա կէսն էր կազմում։ Սկած XIX դարուց նրա ազգաբնակութիւնը սկսեց նուազել տարուց տարի։ 1870 թուականին ազգաբնակութիւնը համարեա հաւասար էր գերմանացոց՝ 36 միլիոն, այժմ 39 միլիոն, իսկ գերմանացիք 66 միլիոն։ Ծննդեան պակասումը աճում է տարէց-տարի, հետեւեալ կերպով. 1871-ին 1000 բնակչութեանը դալիս էր 26, 1 ծնունդ. 1879-ին՝ 25, 3, 1888-ին՝ 23, 7, 1910-ին՝ 19, 8, 1914՝ 18, 1. երբեմն ծնունդ պակսել մահացութիւնից։

Երբ Ֆրանսան ունի 1000 բնակչութեան վրայ 18, 1 ծնունդ, Գերմանիան ունի 36, 6, Անգլիան՝ 26, Իտալիան՝ 33, Աւստրիան՝ 33։ Որպէս զի Ֆրանսան հաւասար պայման ունենայ՝ պիտի 500,000 ծնունդ աւելի ունենայ։ Իսկ տարին նա ունի այդքան վիժումներ։

Համեմատելով տարեկան աճումը վերջին տարիներս պատերազմից առաջ մենք գտնում ենք հետեւեալը՝ Գերմանիայում 141 10,000 բնակչութեան վրայ. 115՝ Անգլիայի, 114՝ Աւստրիայի, 113՝ Իտալիայի, իսկ Ֆրանսիայում՝ 7։

Եթէ մենք ունենայինք, գրում է հեղինակը, 1914-ին՝ 15—20 միլիոն աւելի ֆրանսացի, մենք չէինք գտնուի այն տագնապի մէջ, որի մէջ գտնւում է Ֆրանսան ներկայումս։

Ի՞նչն է պատճառը այդ սարսափելի երեւոյթին։ Ասել, որ Ֆրանսան ծերացել և ընդունակ չի արտադրելու, այդ սխալ է. նուաճում է գաղութներում՝ Կանադայում, Ալժիրիայում և վերջապէս նոյն երկրում՝ ունենալով երբեմն բազմանդամ ընտանիքներ։

Եսասիրութիւն, ուրախ կեանքի ծարաւ, երկիւղ մնուցանել բազմաթիւ անդամօք ընտանիք՝ ահա սրանք են գլխաւոր պատճառը Ֆրանսայի տագնապի։ Դուրս է գալիս, որ ֆրանսացին իւր երկրում վախում է աճելուց, իսկ գաղութներում ընդհակառակը, և այդ է պատճառը, որ նա այնպէս ագահօրէն ձգտում է ունենալ լայնածաւալ գաղութներ, իբրև միջոց ազգի ոչնչացման դէմ։

Ամուսնութիւնը Ֆրանսայում դարձել է մի տեսակ առեւտուր. ով փող ունի, նա կարող է ամուսնանալ, թէև նա ունի ամեն տեսակ ֆիզիկական և այլ պակասութիւն, ինչպէս նկատելի է և մեզ մօտ։

Հռչակաւոր Բուգվելսը գրել է՝ «Երբ մի ազգի մէջ սարսափով են խօսում մայրութեան առթիւ, այդ ազգը նշանակում է փչացել է (pourrie) ծայրայեղօրէն։ Երբ մարդիկ փախչում են աշխատանքից, երբ կանայք խուսափում են մայր լինելուց, աւելի լաւ կը լինի, որ նա անհետանայ աշխարհիս երեսից, որովհետև նրանք արժանի են արհամարհանքի յաջս նրանց, որոնք զօրեղ են և ունեն բարձր հոգի»։

Եթէ Ֆրանսայում այնուամենայնիւ լինում է թէև չնչին աճում, այդ գլխաւորապէս գիւղական տարրի մէջ է լինում. քաղաքներում՝ յայտնի է, որ համարեա աճում չկայ, ամուսնութիւնը շատ չնչին չափով է և այլն։ Այդ վերջինը համատարած երեւոյթ է։

Հեղինակը չի ժխտում, որ առողջապահական միջոցներով կարելի է սակաւածննդութեան դէմ մաքառել, պակասեցնելով մահացութեան տոկոսը և աւելացնելով երկարակեցութիւնը, բայց այդ չի կարող փրկել Ֆրանսիան նրան սպառնացող կարիքից

Հարկաւոր են աւելի դրական միջոցներ՝ բարոյական, նիւթական և քաղաքական։ Պիտի կրթե նոր սերունդը այն հոգով, որ ազգասիրութիւնը պահանջում է չխուսափել ամուսնութիւնից, որդեծնութիւնից և այլն։ Ցետոյ տալ նիւթական աջակցութիւն և այլն։ Ցոյց տալ նիւթական աջակցութիւն այն ընտանիքներին, որոնք ունեն 3 երեխայից աւելի զաւակներ՝ տալով ամեն մէկին տարեկան 180 ֆրանկ։ Տալ աւելի ձայնի իրաւունք նրանց, որոնք շատ զաւակներ ունին և այլն և այլն։

Բժ. Աղասարեան

*) Revue des deux mondes, № 1. La repopulation francaise. Emile Picard.



† ԱԼԷՔՍԱՆԴՐ ԾԱՏՈՒՐԵԱՆ
1865—1917

## ԱՂ. ԾԱՏՈՒՐԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ապրիլի 9-ին հանդիսաւոր կերպով կատարուեց Աղ. Ծատուրեանի թաղումը Թիֆլիսում։

Խուռն բազմութիւն, հոգեւորականութիւն առաջնորդի գլխաւորութեամբ, աշակերտ-աշակերտուհիներ ծաղիկներով, երաժըշտութիւն, դամբանականներ և այլն։

Մի խօսքով ամեն ինչ կատարուեց այնպէս, ինչպէս որ ընդունուած է մեր իրականութեան մէջ և ես ակամայից յիշեցի՝ «գնա մեռիր, արի սիրեմ»։

Երբ դուրս բերին դագաղը եկեղեցուց և ես ուզեցի վերջին հայեացքը գցել այդ վշտի երգչի մելամաղձոտ դէմքի վրայ, ինձ թուաց, որ նրա աչքերը բացուեցին և յանդիմանութեամբ նայեցին ինձ։

Չէ՞ որ ես իմ տկարութիւնը ժառանգեցի հայ իրականութիւնից, ասում էր նրա հայեացքը, չէ՞ որ ես դեռ կարող էի երկար ապրել, եթէ...

Շատ տեղին է լոյս ընծայել Աղ. Ծատուրեանի 1910 թ. ինձ ուղղած նամակը իւր յոբելեանի առթիւ։

«Թոյլ եմ տալիս ինձ սրտաբաց լինել Ձեր առաջ, որովհետև միանդամայն վստահ եմ, որ դուք կը հասկանաք սրտիս անկեղծ խօսքը։

Մեր այլանդակ կեանքում, ուր ծաղրվում ու սպանվում է հայ ստեղծագործ միտքը, որ անարգուած է հայ լեզուն, արհամարհուած է հայ գիրքը, գրական յոբելեանները հասարակական

# ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. ԸՆԿ.

*8 ապրիլի, 1917 Թ. կայացաւ Հ. Կ. Կոմիտէի հերթական նիստը, նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի։*

*— Ականաւոր բանաստեղծ Ալ. Ծատուրեանի մահուան առթիւ, որոշուեց ամբողջ կազմով ներկայ լինել թաղման հանդէսին և ցաւակցութիւն յայտնել նրա ընտանիքին։*

*— Եկատերինոդարի Հ. Կ. Կոմիտէից ստացուած 58 հակ իրերը որոշեց ուղարկել Խնուսի շրջանի գաղթականութեան համար, ինչպէս և Ամերիկայից եկած մի վագոն շորերը՝ Էրզրումի շրջանը։*

*— Պ. Նախագահը զեկուց, որ Տաճկական գրաւած վայրերի ընդհանուր նահանգապետի մօտ տեղի ունեցած ժողովում, որոշուել է յատկացնել 210,000 ռ. սերմացու գնելու համար, ըստ որում որոշուեց 110,000 ռ. յատկացնել Ալաշկերտի շրջանի համար և 100,000 ռ. Վանի շրջանի, որի համար և արուած են արդէն անհրաժեշտ կարգադրութիւններ։*

*— Գանձակի շրջանի լիազօր պ. Ա. Բոլեանցի գրութեան համաձայն, որոշուեց Գանձակի որբանոցներին կից ունենալ և շորերի արհեստանոց։*

——

*Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է՝*

*Պ. Գրիգոր Ստեփանեան Մինասեանից յօգուտ «մի հայ մի ոսկի» ֆոնդի 100 ռ. և յօգուտ ճաշարանի 25 ռ.։*

*Մարիամ Դաւթեան Եղիազարեանից ի յիշատակ իւր ամուսին Վասիլ Եղիազարեանի յօգուտ ճաշարանի 50 ռ.։*

*Տիկին Զարուհի Ամիրաղեանից ի յիշատակ հանգ. Աղէքսանդր Ամիրաղեանի, յօգուտ Բարանայի դպրոցի 400 ռ., յօգուտ փախստականների 100 ռ. և յօգուտ ճաշարանի 50 ռ.։*

*Յովհաննէս Տէր-Օգանեանից յօգուտ փախստակ. 5 ռ. և յօգուտ տեղական չքաւորների 5 ռ.։*

*Տիգրան Թովմասեանից յօգուտ փախստակ. 13 ռ.։*

*Գրիգոր Մարտիրոսեանից յօգուտ աղքատների 1 ռ. 30 կ.։*

*Ե. Կ.-ից յօգուտ չքաւորների 5 ռ.։*

*Առաքել Մահտեսի Յակոբեանից յօգուտ չքաւ. 5 ռ.։*

*Գարեգին Մեղաւորեանից յօգուտ փախստ. 20 ռ.։*

*Հրաչեայ Ֆէթվէճեանից յօգուտ չքաւ. 100 ռ.։*

*Սաչխերէթի ճիւղից յօգուտ ուսուցչ. խնամող որբ երեխաների Ընկերութեան 30 ռ.։*

*Մարիամ Փիրումեանից յօգուտ ճաշարանի մէկ ոչխար։*

*Օր. Զարուհի Մութաֆեանից ի յիշատակ հանգ. Աստղիկ Ղազարեանի յօգուտ ճաշարանի 5 պուդ 3ու կէս ֆ. բրինձ։*

——

*Խորհուրդս շնորհակալութեամբ ստացել է հարիւրական ռուբլի հետեւեալ անձերից, որոնք գրուել են մշտական անդամ և ստանալու են մշտական անդամութեան մրցագիր՝ Գրիգոր Ստեփանեան Մեասնիկեան, տիկին Եղիսաբեթ Սարգսեան Մեասնիկեան, Զարուհի Ամիրաղեան, Բագրատ Ռոստոմեան Ամիրաղեան և Արշաւիր Սահաթճեան (Պետրոգրադից)։*

——

*Շնորհակալութեամբ ստացուած են դպրոցական նպաստներ՝ Իշխանուհի Երկայնաբազուկ-Արղութեանից յօգուտ Սանահնի դպրոցի 100 ռ. և յօգուտ Սանահնի որբանոցի 200 ռ.։*

*— Բժ. Միքայէլ Մղարէուլեանից յօգուտ Ախալգորու դպրոցի 200 ռ.։*

*— Միքայէլ Յովսէփեան Արամեանից 900 ռ.։*

*— Արշակ Նազարեան Միլեանից 900 ռ.։*

*Շնորհակալութեամբ ստացուած է՝*

*— Մոսկուայից՝ պ. Ռուբէն Բաթանեանից յօգուտ չքաւորների 40 ռ.։*

*— «Кавк. Сл.»-ի միջոցով Ս. Մատինեանից յօգուտ չքաւորների 50 ռ.։*

*— «Тиф. Лист.»-ի միջոցով Շահնազարեանից յօգուտ ճաշար. 50 ռ.։*

*— Կատարինէ Մանդինեանից ի յիշատակ հանգ. Եազոն որդու յօգուտ ճաշարանի 10 ռ.։*

*— Տօնաշէն գիւղի գործ. Դանիէլ քահ. Եղիգարեանից յօգուտ գաղթակ. և որբանոցների 86 ռ. 25 կ.։*

—o—

*Ամերիկայից ստացուած է Էրզրումում բնակուող Աննիկ Կոժոյեանին յանձնելու համար 155 ռ.։*

*— Օր. Կ. Պօղոսեանից յօգուտ չքաւորների 15 ռ.։*

*— Վասիլ Շերմազանեանի ընտանիքից հոգեհացի փոխարէն հանգ. Վասիլի յիշատակին 100 ռ.։*

*— Օլգա Վարդպատրիկեանից յօգուտ չքաւորների 10 ռ.։*

*Վլադիկավկազի վարչութեան կազմը՝ նախագահ Դաւիթ Նոնեան, գանձապահ՝ Յարութիւն Գէորգեան, անդամներ՝ տ. տ. Եղիսաբեթ Կարախանեան, Եղիսաբեթ Մամուլեան և Հայկ Բունաթեան, քարտուղար՝ Կոստանդին Մարտիրոսեան։*

*Գորիսի վարչութեան կազմը՝ Նախագահ Վ. Սաֆրազբէկեան, գանձապահ՝ բժ. Միքայէլ Պարոնեան և քարտուղար՝ Տիգրան Սազանդարեան։*

*Նուխու վարչութիւնը դիմելով Խորհրդիս խնդրել է տալ մշտական անդամութեան մրցագիր տիկին Սոֆիա Վարդանեանին, որ ներկայացրել է ճիւղի վարչութեանը սահմանած 100 ռ.։*

# Ք Ր Ո Ն Ի Կ Ո Ն

*— Հանգ. բանաստեղծ Ալէքսանդր Ծատուրեան ծննդավայր Ջաքաթալայի հասարակութեան յանձնարարութեամբ պ. Տ. Նազարեանը ցաւակցութիւն յայտնեց սգաւոր Վէրա Ստեփանեան Հախվերդեանցին։*

*— Բաք. դումայի նիստում որոշուեց 1) Թիֆլիսի փողոցներից մէկը անուանել Ծատուրեանի անունով, 2) արհեստագիտական դպրոցում նշանակել մի թոշակաւոր և 3) քաղաքային դպրոցներից մէկը կոչել բանաստեղծի անունով։*

*— Հայ Գրողների Ընկերութեան ապրիլ 14-ի երեկոյթն նուիրուեց բանաստեղծ Ծատուրեանի յիշատակին։*

*— Հ. Յ. Դաշնակցութեան (Ռայոնական շրջանային) ժողովները անցին հինգ օր։*

*— Ապրիլի 10-ից Փառաց Տաճարում բացուել է Գեղարուեստը խրախուսող Կովկ. Ընկ. ցուցահանդէսը, որ բաց է լինում առաւօտ. ժամ 10-ից մինչև երեկ. 6-ը։ Ցուցահանդէսը տեւելու է մէկ ամիս։*

*— Հայոց Ազգ. Ընկ. կազմակերպած Հայագիտական դասընթացները արդէն սկսուել են. հայոց ժամանակակից պատմութեան մասին պիտի խօսի պ. Լէօն։*

*— Մոսկուայի Հայկական Կոմիտէն ձեռնարկել է «ազատութեան փոխառութիւնը» տարածելու գործին հայոց մէջ. այդ առթիւ Կոմիտէն հեռագրել է Թիֆլիսի հայ վաճառականներին։*

*— Ապրիլի 18-ին Թիֆլիսում հանդիսաւոր կերպով կատարուելու է Մայիսի 1-ի Տօնը։*

*— Վանի մօտ Ձերբակալուած է իշխ. Շախովսկին, որ քրդերի հետ գաղտնի յարաբերութեան մէջ է եղել և նրանց դիւրութիւն է ընձայել յարձակուելու ռուս զօրքերի դէմ։*

— Վերջերս մեծ աղմուկ են հանում վրացի ազգայնականները ինքնավար Վրաստան ստեղծելու լօզունգներով։ Պատասխանատու իշխանութիւնը որոշել է պատասխանատւութեան կանչել այդ ուղղութեամբ ագիտացիա մղողներին։

— Կովկասի Կոմիսարների Կոմիտէն մի յայտարարութեամբ դիմել է ժողովրդին և հրաւիրել նրաց աջակցելու ժամանակաւոր կառավարութեան։

— Թէհրանի եղբայր. Օգն. Կոմիտէին հեռագրում են Բաղդադից, որ այնտեղ հաւաքել են մօտ 200 փախստական, որից 120-ը որբեր ու այրիներ են։ Փախստականներին հաւաքում են տներից. յոյս կայ որ նրանց թիւը հասնի 4—500-ի։ Անհրաժեշտ օգնութիւնները ստացւում են անգլիացոց կառավարութիւնից։ Պէտք է շուտափոյթ օգնութիւն։

# Գրականութիւն

## ՀԱՆԳԵԼԱՔԱՐ *)

Ցցուեր է Տրավու ծործորիկին մէջ,
Ժայռ մ'է սպիտակորակ,
Կղզեակ՝ ճամբի վրայ,
Կռնակը՝ դէպի լեռը,
Տակը՝ դաշտակը,
Իսկ դէմը՝ ծովակը։
Փրփրեղ Ջրիկը կը դդրչէ անոր կողքէն,
Կը սահի դար վար,
Եւ նա ամեն օր կը լսէ խոխոջն անուշիկ,
Միշտ անյոյզ՝ կը խոկայ յուշիկ։
Ամեն օր նա կը նայի դաշտակի արտերուն,
Կանաչին ծփծփուն,
Կորնգանին կարմրած,
Ու ցունկին դեղնամած։
Կամ կը պշայ ծովակին կապուտակ,
Անոր ալեակին վէտվէտ,
Թէ կոհակին մոլեգին,
Եւ կարծես կօրօրէ գլուխն աներեր
Տարրին վրայ յարափոփոխ.
Մինչ զեփիւռը կը սըւսըւայ անոր գլխով,
Ու կը հծծէ սոյլը փախստեայ։
Անցորդ մշակը կը կռթնի այս քարին,
Ծանր բեռը կառնէ տակ,
Կուղղէ մէջքը կորացած,
Կը շնչէ օդը լիաթոք,
Կը մեղմէ տապը խոնջէնքի,
Կը ցնդի կայլակը քրտինքի։
Դարեր շատ առաջ,
Մեծ բանաստեղծ մը նստաւ այս ժայռի վրայ,
Եւ թուխ աչքերով
Զափեց տեսարանն երփներփեան,
Ներզգաց իր հանգիստը մռայլ,
Ու ճենճերեց հառաչ ի խորոց սրտից։
Իսկ քիչ առաջ, ամեն օր,
Հօտը կանգնէր անոր մօտէն,
Քոստ այծն անոր կը քսէր իր կռնակը լերկ.
Իսկ գամփռը կը բարձրացնէր ոտը՝
Միզելու անոր կողին։
Եւ յետոյ կանցնէին հարսեր քողածածկ.
Եւ կոյսեր ամօթխած,
Կը սպասէին մենակ,
Կը կանգնէին կողքին երկիւղած.
Կաղօթէին զգայափակ։
Ձեռք կառնէին հանգելաքարի չորս քարերը
պզտիկ,
Կը դնէին շրթներուն բստեայ,
Կը տանէին գլխին երազուն,
Ձախ ձեռքը՝ կրծքին,
Եւ կը փորձէին բախտը հեռակայ։
Եւ դողդոջ անուրջով,
Կը տենչային երջանկութիւն,
Կաղերսէին կարօտի աչքերով,
Կը կանչէին խաղաղութիւն,
Կը մաղթէին սիրտ ու սէր։
Եւ ցած կը թողնէին քարերը
Պզտիկ մակարդակի վրայ...
Անկումը խաչաձև՝
Պսակումն էր ըղձանքի։

* * *

Արդ, ով Հանգելաքար սրբազան,
Հոգիս ջախջախ ու մոլար,
Թառեր է քովդ այս ժամին,
Շուրջդ՝ աւեր մահաշունչ,
Շուրջդ՝ անտէր, շուրջդ՝ սև...
Բայց եկեր եմ պատգամիդ։
Ահա՛ համբոյրս քառեակ քարերուդ,
Լսէ աղօթքս երրակի։
Ըսէ՛, յանուն կոյսի շուշան սրտիկին,
Որ բաբախեց քեզ մօտիկ,
Ի սէր հարսի մշուշ երազին,
Որ անրջեց քեզ հակած,
Ըսէ՛, կը գա՞յ խաղաղութիւն,
Կը լինի՞ երջանկութիւն,
Բե՞ր խաչ։
Ո՛վ ոգի հանգիստի,
Որ կը բնակիս նուիրական ժայռի մէջ,

*) Ճամբի վրայ քիչ բարձր քար է, ուր շալակտարը կը դնէ իւր բեռը, կը հանգստանայ, և նորէն կը շալկէ առանց մէկի օգնութեան ու ճամբայ կիյնայ։ Ուշտունիքի Տրավու հանգելաքարը, Նարեկ-Նորգիւղ շաւիղի վրայ, սուրբ է, այնտեղ հանգստացեր է Գ. Նարեկացին, և անոր վերևն է իւր բխեցուցած աղբիւրը։ Այս քարի վրայ անցորդները մուրազ կընեն, չորս պզտիկ քարեր ձգելով, որ խաչ կազմեն։ Ա. Բ.

Կը ժպտիս յոգնած անցորդին,
Կը փայփայես ջարդուած մէջքը սարակի,
Կը լցես ոսկի քրտինքն աշխատաւորի,
Կը լսես գոռ երգը տիեզերքի,
Ըսէ, կը հալածուի՞ չարը,
Կը փարատուի՞ խաւարը,
Կը վերանա՞յ անէծքը,
Կը գա՞յ Արուսեակը լուսաբեր,
Բե՛ր խաչ։
Ո՛վ ոյժ ժայռեղէն,
Որ դարերով գամուեր ես ճամբի վրայ,
Ո՛չ կը ժպտես և ո՛չ կարտասուես,
Ո՛չ կաղօթես և ո՛չ կերգես,
Ո՛չ կը կարօտես և ո՛չ կը մերժես,
Ցանուն այն մեծ բանաստեղծի շունչին,
Որ դեռ կը սաւառնայ քո շուրջը,
Կը թրթռայ քո գագաթին,
Կը ծաւալուի ծործորի մէջ,
Ըսէ, կը գա՞յ Արշալոյսը…
Բե՛ր խաչ։
— Եւ ո՛չ, և այո՛…

Արտաշէս Բաբսեղեան

---

## ՎԱՆՑԻ-ՔԻԻՉԱՔ *)

### Բ.

Պատմում են, որ Սատմբոլում Քուչակն այցելում է Դասթան անունով մի աշըղի, 8—9 տարեկան աղջիկը դրան առջև կանգնած է լինում. «Գըղըմ, ասում է Քուչակը, աշըղ Դասթան էվդէ՞ դըր.

Աղջիկը.—«Է վէթ, աշըղ Դասթան էվդէ դըր խասթա դըր»։
Գիւլու ռէհան Դասթա դըր.
Աշը՛ղ, պտըտրուկ Նաստա՛ն դըր»

Քուչաքը նեղն է ընկնում, չի կարում իմանալ թէ պտըտրուկն ինչ է։ Դասթանն իմանալով հիւրի կողմից պատասխանում է. գըղը՛մ,

Գոյուն գոյունդան օլուր,
Զիլիֆ բոյունդան օլուր,
Պտըտրուկ գոյունդան օլուր.

Թարգմ. Ոչխարից ոչխար է ծնում,
Խոպոպը պարանոցից է կախւում,
Պտըտրուկն էլ ոչխարից է լինում **)

Պատմւում է նոյնպէս, որ Քուչակն Ստամբոլից մեկնելով անցնում է գաւառները և իւր բող եղը հեծած՝ անցնում է Խլաթ գաւառը, ուր ծովափին մօտիկ մի գիւղի առջև հանդիպում է մի չարաճճի հօտաղի, որ նոյնպէս հանելուկներ է առաջարկում Քուչակին.

«Աշըղ բինմիշ դըր բօղի,
Բիր Ալլահ դըր, բիր օղի,
Օնէ՞ դուշ տըր
Բիր բուռնի վար՝ դըրդ դէօղի»։

*) Տես «Համբաւաբեր» № 13.

**) Ոչխարի՝ պնդուկի նման հատ-հատ աղբը կոչւում է պըտըրուկ, որ այստեղ չարաճճի աղջիկը բառախաղով պտըտրուկ է անուանում. ինչպէս և Նեստէ՞ն (ինչի՞ց)-ը Նաստան է արել։

Թարգմ. Աշըղ բող եղն է հեծած,
Մենակ ինքն է ու Աստուած,
Այն ինչ թռչուն է, որ
Մէկ քիթ ունի քառասուն աչք։

Քուչաքը չի կարողանում մեկնել հանելուկը տրեխի՝ որ մի քիթ ունի և բազմաթիւ ծակտիք։

Հօտաղը քաջալերուելով իւր տարած յաղթութիւնից երկրորդ հանելուկն է առաջարկում.

«Աշըղ, դիէր, բու սուդա,
Եդի ջան վար բու սուդա,
Իւչի կէօկէ չըխմիշ
Դէօրթի ղալմիշ բու սուդա»։

Թարգմ. Աշըղ, ասում է, *) այս ջրում.
Եօթ անձինք կան այս ջրում
Երեքն արօտն **) են ելած
Չորսը մնում այս ջրում։

Հանելուկն ակնարկութիւն էր հօտաղի արածեցրած եօթը գոմէշների մասին, որոնցից երեքը կանաչ արօտն են ելել արածելու և չորսը մնացել ջրում։

Հօտաղն երրորդում է.

Աշըղ, դիէր, լափառընա,
Լափ վուրդի լափասընա,
Օ քիմ իտի քի
Իւչ իւմրուղ վուրդի
Թանրինըն թափասընա ***)։

Թարգմ. Աշըղ, ասում է, ձեռքի վրայ.
Ձեռք զարկաւ ձեռքի վրայ,
Այն ո՞վ էր որ
Երեք բռունցք տուաւ
Ստեղծողի գլխի վրայ։

Այդ ժամանակ հօտաղն իւր ձեռքերը իրարու զարկելուց յետոյ երեք անգամ բռունցքով տալիս է իւր կանգնած բլրակի գլխին. մինչդեռ դիլլեմից կարող էր հասկացուել, որ ունէ մէկը բռունցքով է տուել Աստուծու գլխին, որովհետև թուրքերէնում թափա (արդի հնչումով՝ թէփէ) նշանակում է թէ գլուխ և թէ բլուր։

Քուչակը զայրացած անիծում է հօտաղին, որ իսկոյն քարանում է. իսկ ինքն անցնում է մօտակայ գիւղը *) և հիւրընկալւում իւր քրոջ տանը. վերջը զղջում է իւր տուած անէծքից, որովհետև հօտաղը իւր քրոջ որդին է լինում։

Այստեղ կտրւում է թելը Քուչակի պատմութեան և նրա վերջին օրերը թաղւում են մթութեան մէջ։ Ասում են, որ նա Վանի մօտիկ Խարակոնիս գիւղից է եղել, իւր անունով կնքուած և մինչև այժմ երգուող մի թուրքերէն երգից, որ խուփեմ արել երկար տարիներից ի վեր, իմանում ենք, որ Բանդումահին է իւր հայրենիքը և նա հետևեալ կերպով է նկարագրում իւր հայրենիքի գեղեցկութիւնները.—

«Բանդումահի բանդ իւսթընա *****)
Ատըրբէջան եօլ իւսթընա,
Բիլբուլ ղոնար գիւլ իւսթընա,
Օնա բանդումահի դէրլար։

*) Այսինքն՝ քեզ հետ խօսողն է ասում, որ ինքն հօտաղն է։

**) Կէօկ թրքերէնում թէ կանաչ արօտ է նշանակում և թէ երկինք։

***) Արտասանութիւնը ժողովրդական է և պահւում է նոյնութեամբ։

****) Ափսոս որ չի ասւում ո՛ր գիւղը։

*****) Ժողովրդական արտասանութիւնը պահպանւում է նոյնութեամբ,

*Բանդումաճի սարը սագլար.*
*Ինչընդա վար ղուբա ղագլար,*
*Սէյրան չըխմիշ խանըմ ղըզլար,*
*Օնա բանդումաճի դէրլար։*
*Բիր եանընտան սուլար ախար,*
*Բիր եանընտան Արճէշ բախար,*
*Վանլի-Քուչաքըն վաթանի*
*Օնա բանդ ու մաճի դէրլար»։*

Թարգմ.—Բանդումաճի են ասում նրան, որ թումբերով է շինած և Ատրպատականի ճանապարհի վրայ է գտնւում. ուր բլբուլն է թառում վարդի վրայ։

Բանդումաճի են ասում նրան, որ ծածկուած է դեղնագոյն եղէգնուտներով, ուր բնակւում են պարարտ սագեր և ուր պտոյտի են ելնում խանըմ օրիորդները։

Մի կողմից ջրերն են հոսում, մի կողմից Արճէշն է նայում, Վանլի-Քուչակի հայրենիքն այն է՝ որին բանդ ու մաճի են ասում։

Քուչակի անունով յայտնի միւս երգերը կրօնական բովանդակութիւն ունեն, որոնց թէ լեզուն և թէ բանաստեղծական թռիչքը իր անուան արժանի բաներ չեն։ Երևի երկնային Մուսան բացի սիրուց ուրիշ ներշնչումներ զլացած էր իրեն։

Կարծում եմ, ինչպէս հետևեալ բաղդատութիւնը ցոյց կը տայ, ժողովրդական յայտնի Թագւորագովքը Քուչակինը պիտի լինի.

*Պանդուխտին*

«Գնամ ու գնամ» կասէր որդիս, չհաւատացի
Երբ «Մնաս բարով» ասաց, կասկածեցի,
Երբ ոտքն ասպատակեց, ես զարմացած մնացի,
Այլ բան չկարցայ ասել, «ուր որ երթաս, ճամբադ բարին»։
Այն ճամբան, որ դու երթաս, վարդ ու մուրը առջիդ բանեն.
Այն քաղաքն, որ դու մտնես, գրողի ծայնը չհանի,
Այն խնճոյքը, որ դու նստես, զաւաթները գինով լցուի,
Ծովերը գինի դառնան, իսկ նաւերը ճաշերով լի»:

*Թագւորագովք*

Թագւոր բարով, հազար բարով,
Դու վարդ ես կանանչ տերևով,
Աստուած զէնք ու արևն օրհնէ,
Երկնուց գետնուց զօրութիւնով.
...Էն ճամբով, որ դու կերթաս,
Քար քաղած, աւազամաղած,
Էն գետով որ դու կընցնաս,
Գետ գինի կարմունջն ապակի։

13 մարտ, 1917 թ.

Ս. Մովսիսեան

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Թիֆլիս, 14 ապրիլ

Մեծարգոյ Խմբագիր!

Թոյլ տուէք ձեր պատուական շաբաթաթերթի միջոցով իմ խորին շնորհակալութիւնը մատուցանել սրբազան եպիսկոպոսներին, պատուարժան քահանաներին, հիմնարկութիւններին և այլ բազմաթիւ անձերին, որոնք բանաստեղծ Ալէքսանդր Ծատուրեանի մահուան առիթով ցաւակցութիւն են արտայայտել ինձ թէ իրանց ներկայութեամբ և թէ նամակներով ու հեռագիրներով։

Վշտաբեկ՝ Վերա Ստեփանեան Հախվերդեանց։

Շուլաւէր, 10 փետր.

Մեծարգոյ պ. «Գաղափարի» խմբագիր!

Շուլաւէրի Կ. Հ. Բ. Ընկերութեան Վարչութիւնը, իրեն յայտնի պատճառով, հրաժարուելով Գարեգին Գրիգորեան Տէր-Յակոբեանի տեղիս գրադարան-ընթերցարանին ուղարկած մի օրինակ «Գաղափար» թերթի նուէրից, այդ մասին յայտնել էր Ձեզ և խնդրել Ընկերութեանս վճարով ուղարկել նոյն թերթը։ Դուք, Ընկերութեան Վարչութեան կամքին հակառակ, տպագրելով այդ նամակը լրագրիդ № 12-ում, Ձեր զարմանքն արտայայտելուց յետոյ, վիրաւորել էիք տեղիս Վարչութեանը և ուսուցչութեանը՝ «զուլուներ» ու «լակէյ» անուանելով։

Պ. խմբագիր, մի Ընկերութիւն, որ ինքն է նուէրներ փնտռում և որի համար ամենաչնչին նուէրն անգամ կենսական նշանակութիւն ունի, հասկանալի չէ՞ր, որ առանց մի որ և է պատճառի չէր հրաժարուիլ յիշած պարոնի նուէրից։

Թէև ցանկալի չէր մամուլի մէջ արդէն շատ անգամ ծեծուած մի հարցի նորէն դառնալու, բայց որովհետև դուք մամուլի նիւթ էք դարձրել Վարչութեան Ձեզ ուղղած անմեղ նամակը, և որպէսզի հասարակութեանը աւելի ևս թիւրիմացութիւնների մէջ չձգէք, Վարչութիւնս ստիպուած է պարոնի նուէրը յետ դարձնելու շարժառիթի մասին յայտնել հրապարակով։

Տ. Նազիրեանի միլիոնաւոր կտակի ժառանգներից մին է և Շուլաւէրի հայ հասարակութիւնը, որ իւր հաւատարմատար— իրաւաբան պ. Աղ. Պապովեանի միջոցով նահանգական դատարանում յարուց կտակատարների հաշուետւութեան խնդիրը։

Արդ յիշեալ կտակի քննութեան գործից երևում է և պարզ է Շուլաւէրի հասարակութեան և թէ նրա Բ. Ընկ. Վարչութեան համար, որ տեղիս գրադարան-ընթերցարանին «Գաղափար» նուիրաբերող պարոնը այն գաղափարով տոգորուածներից է, որ առանց միջոցների խտրութեան, յիշած միլիոնաւոր բարեգործական կտակի շատ գոլորշացման բազմաթիւ գործիքներից մէկն է եղել։ Շուլաւէրի հասարակութիւնը, ի դիմաց ամբողջ հայութեան, մինչև օրս էլ մաքառելով՝ դեռ շարունակում է, դատի միջոցով, ազատել կտակի ողորմելի մնացորդը իսպառ գոլորշիանալուց։ Հետևապէս մի Բարեգործական Ընկ. Վարչութիւն, ընտրուած լինելով այն հասարակութիւնից, որ դեռ շարունակում է բարեգործութեան թշնամիների դէմ մաքառել՝ բարոյապէս, թէ իրաւաբանօրէն ոչ մի իրաւունք չունէր բարեգործական նպատակներով կտակուած միլիոնների ցեցերի որևէ մէկից նուէր անուան տակ ընդունել ինչ էլ որ լինէր։

Իսկ ինչ վերաբերւում է, պ. Խմբագիր, տեղիս Վարչութեան և ուսուցչութեան հասցէին Ձեր շպրտած անվայել «զուլուներ» և «լակէյ» բառերին՝ Վարչութիւնս ընդունակ չլինելով Ձեր այդ վարմունքը տգեղ բառերով որակելու, թողնում է, որ Ձեր արած քայլի վրայ ինքներդ լինէք դատաւոր։ Մենք միայն ցաւում և ափսոսում ենք, որ մի խմբագիր կարող էր իրեն այդքան շատ թոյլ տալ իջնելու իւր կոչման բարձրութիւնից և վիրաւորելու տեղիս Բարեգործական և դպրոցական մարմիններին։

Վարչութեան անդամներ՝ Վահան Միրաքեանց, Արամ Մեհրաբեանց, տ. Զ. Զարգարեան, տ. Վ. Միրաքեանց, Յ. ք. Վերանեան, Վ. Զարգարեան, Կ. Տէր-Պօղոսեան, Յակոբ Տէր-Պօղոսեան, Հայկ Տէր-Յակոբեան։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Տպարան Ն. Աղանեանի Тип. Н. Аганьянца, Полицейская 7.